Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ Կենտկոմի Արդյունաբերական արտադրության և շինարարության ղեկավարման բյուրոյի գաղափարական աշխատանքի բաժին

ՀԿՊ Կենտկոմի Գյուղատնտեսական արտադրության ղեկավարման բյուրոյի գաղափարական աշխատանքի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

ՓԵՏՐՎԱՐ 4 1963




# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն. Երևան, ՀԿՊ կենտկոմի շենք, II հարկ, սեն. 71, հեռախոս՝ 2—52—72:

СОДЕРЖАНИЕ

МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



ИЗ ОПЫТА АГИТАЦИОННОЙ РАБОТЫ



ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕД



В СТРАНАХ КАПИТАЛА



В ПОМОЩЬ АГИТАТОРАМ





**Адрес редакции:** Ереван, здания ЦК КП Армении, II этаж, ком. 71, тел. 2-52-78.



# ՀԵՏԵՎԵՆՔ ՈՒՍՏԼԱԲԻՆՍԿՑԻՆԵՐԻ ԵՎ ՄԱՐՏՈՒՆԵՑԻՆԵՐԻ ՀԻԱՆԱԼԻ ՕՐԻՆԱԿԻՆ

Հիանալի նախաձեռնություն են հանդես բերել գյուղի աշխատավորները։ Նրանք համաժողովրդական սոցիալիստական մրցություն են ծավալել 1963 թվականը գյուղատնտեսական մթերքների առատության տարի դարձնելու համար։ Այդ նպատակով բարձր պարտավորություններ են ստանձնել Կրասնոդարի երկրամասի Ուստ-Լաբինսկի արտադրական վարչության կոլտնտեսությունների և սովխոզների աշխատավորները։ Նրանք իրենց առջև խնդիր են դրել՝ Հայրենիքի շտեմարանները առատորեն հացահատիկ լցնել։

Կուբանցիները պարտավորվել են մեկ տարում հացահատիկի արտադրությունն ավելացնել գրեթե մեկուկես անգամ, պետությանը վաճառել 13,4 միլիոն փութ լավորակ հացահատիկ։ Հացահատիկի մթերումները այս տարի անցած տարվա համեմատությամբ, երկրամասում կաճեն 2,7 միլիոն

փթով կամ 25 տոկոսով։ Նրանք որոշել են այս տարի յուրաքանչյուր հեկտարից ստանալ առնվազն 200 փութ հացահատիկ, յուրաքանչյուր 100 հեկտար վարելահողի դիմաց սպանդանոցային քաշով արտադրել 60-ական ցենտներ միս, իսկ յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց ստանալ 245 ցենտներ կաթ։ Նույն ժամանակամիջոցում Ուստ-Լաբինսկի վարչության տնտեսությունները պետությանը կվաճառեն 19,2 հազար տոննա միս՝ 2,6 հազար տոննայով ավելի, քան անցյալ տարի, 56,1 հազար տոննա կաթ, 13 հազար տոննայով ավելի, քան անցյալ տարվա ընթացքում, բտել և պետությանը վաճառել 23 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 145 հազար խոզ, 1,3 միլիոն թռչուն։ Յուրաքանչյուր երեք հեկտար վարելահողի դիմաց բտել երկու խոզ։

Այս բոլորից բացի ուստլաբինսկցիները պարտավորվել են այս տարի ամբողջ վարչությունում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 9—10 տոկոսով և մեծապես իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, կոլտնտեսություններում արմատավորել տնտհաշվարկը և այլն։

«Մենք,— ասված է ուստլաբինսկցիների նամակում,— կոչ ենք անում... գյուղի բոլոր



աշխատավորներին, մտնել համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, համաժողովրդական պայքար ծավալել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման համար։ Թող յոթնամյակի հինգերորդ տարին դառնա հողագործության և անասնապահության հուժկու վերելքի տարի։ Սովետական մարդկանց ուրախացնենք առատ բերքով։ Հանուն այս վսեմ նպատակի արժե լավ աշխատել»։

Ուստլաբինսկցիների հայրենասիրական այս նախաձեռնությանը հավանություն տվեց ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն և այդ կապակցությամբ ընդունված հատուկ որոշման մեջ համոզմունք հայտնեց, որ Կուբանի գյուղական աշխատավորների հայրենասիրական նախաձեռնությունը լայն արձագանք կգտնի երկրի գյուղատնտեսության բոլոր աշխատողների շրջանում և գրավական կհանդիսանա հաջողությամբ կենսագործելու համապարտիկան ու համապետական խնդիրը՝ օգտագործելով գյուղատնտեսության բոլոր ռեզերվները երկրում հացահատիկի մթերումները 4 միլիարդ 200 միլիոն— 4 միլիարդ 500 միլիոն փթի հասցնելու, ինչպես նաև մսի, կաթի և անասնապահական մյուս մթ-

թերքների արտադրությունն ու գնումները զգալիորեն ավելացնելու համար։

Կուբանցիների հայրենասիրական նախաձեռնությանը, ինչպես մեր մեծ երկրի գյուղատնտեսության բոլոր աշխատավորները, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսականները, սովխոզների բանվորները, գյուղատնտեսության մասնագետները ջերմ հավանություն տվեցին և նրանց օրինակով սոցիալիստական մրցություն ծավալեցին 1963 թվականը գյուղատնտեսական մթերքների առատության տարի դարձնելու համար։

Իրենց հավաքում Մարտունու կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության գյուղատնտեսության առաջավորները սոցիալիստական նոր պարտավորություններ են ստանձնել։ Նրանք խոստացել են 1963 թվականին արտադրել 217 հազար ցենտներ ամբարային հաց՝ 18,5 տոկոսով ավելի՝ անցած տարվա փաստացի ստացածից, անջրդի տարածությունների մեկ հեկտարից ստանալ 12,1 ցենտներ բերք, ծխախոտի պլանտացիաները հասցնել 1.074 հեկտարի, որը 70 տոկոսով ավելի է յոթնամյա պլանով նախատեսվածից, իսկ բերքատվությունը՝ հեկտարից 18 ցենտներ։

Ստանձնելով սոցիալիստական նոր պար-



տավորություններ, մարտունեցիները հատուկ ուշադրություն են դարձրել հանրային անասնաբուծության զարգացման վրա։ Նրանք բազմակողմանիորեն հաշվելով իրենց հնարավորությունները պարտավորվել են այս տարի, անցյալ տարվա համեմատությամբ, մսի արտադրությունն ավելացնել 24 տոկոսով, կաթինը՝ 21,6, բրդինը՝ 30, ձվինը՝ 71,3 տոկոսով։ Պետությանը հանձնվելիք մթերքները ավելացնել. մսինը՝ 12 տոկոսով, կաթինը՝ 24,7 տոկոսով, բրդինը՝ 32, ձվինը՝ 44 տոկոսով։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացնել 7 տոկոսով, որից կովերինը՝ 10, մանր եղջերավորներինը՝ 8,7, խոզերինը՝ 10,5, թռչուններինը՝ 40 տոկոսով։ Մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը ավելացնել 140 կիլոգրամով, մեկ ոչխարի բրդատվությունը՝ 400 գրամով։

Որպեսզի անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելի շատ լինի, վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները պարտավորվել են կուտակել 43 հազար տոննա խոտ, պատրաստել 40 հազար տոննա սիլոս, առանձնացնել 7 հազար տոննա կարտոֆիլ և ճակնդեղ, 6.000 տոննա հատիկաֆուրաժային կերեր։

Ստանձնած պարտավորությունների կա-

տարումն ապահովելու նպատակով նրանք նախատեսել են կենսագործել հետևյալ միջոցառումները. հացահատիկի ցանքատարածությունները անցյալ տարվա համեմատությամբ ավելացնել 2.500 հեկտարով, 1.225 հեկտար ցելերի վրա կատարել ոլոռի և վարսակի խառը ցանք, գյուղատնտեսական շրջանառությունից դուրս մնացած, էրոզիայի ենթարկված և անարդյունավետ արոտավայրերի 1.600 հեկտարի վրա կատարել գարու, միամյա խոտաբույսերի ցանք, 5.000 հեկտար արոտների վրա կատարել մակերեսային և արմատական բարելավում: Շրջանում նոր արմատավորվող արժեքավոր կերային կուլտուրաների՝ եգիպտացորենի և շաքարի ճակընդեղի համար առանձնացնել 700 հեկտար լավագույն հողեր:

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու նպատակով նախատեսված է մինչև գարնան դաշտային աշխատանքներն սկսելը դաշտ փոխադրել 30 հազար տոննա տորֆ և տեղական պարարտանյութ, նրանց հետ օգտագործելով սուպերֆոսֆատ, որը լայն կիրառում է ստացել վարչության բոլոր տնտեսություններում: Ծխախոտի, եգիպտացորենի, ճակնդեղի և կարտոֆիլի ցանքատարածությունների յու-



րաքանչյուր հեկտարին տրվելու է 25—30 տոննա տեղական պարարտանյութ, վարի աշխատանքները մեքենայացվելու է 100 տոկոսով, ցանքը և բերքահավաքը՝ 90 տոկոսով:

Վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները լուրջ պարտավորություններ են ստանձնել ոռոգման ցանցը կարգավորելու, գյուղատնտեսական մեքենաներն ու գործիքները վերանորոգելու, հանրային հոտի ձմեռումը հաջող անցկացնելու, ետ մնացող կոլտնտեսություններին և սովխոզներին առաջավորների մակարդակին բարձրացնելու և շատ ուրիշ աշխատանքների վերաբերյալ:

Շատ ճիշտ են նկատել հավաքի մասնակիցները, որ հաջողությունը ինքնիրեն չի գալիս, այն պահանջում է ուժերի լարում, հանձնարարված գործի համար մարդկանց պատասխանատվության բարձրացում, կադրերի ճիշտ ընտրություն և օգտագործում, տնտեսությունների խելացի կառավարում:

Ագիտատո՛ր, լինելով սոցիալիստական մրցության կազմակերպիչ, այս օրերին մեծ պատասխանատվություն է դրվում քեզ վրա՝ ունկընդիրներին հանգամանորեն պարզաբանել ուստլաբինսկցիների և մարտունեցիների հիանալի նախաձեռնությունը, պաշտպանել և

լայնորեն տարածել այն։ Դրա հետ միասին դու պետք է օգնես տվյալ կոլտնտեսությանը, սովխոզին, բրիգադին, որտեղ որ աշխատում ես, որպեսզի նրանք հետևելով ուստլաբինսկցիների և մարտունեցիների օրինակին նկատի առնեն ռեալ հնարավորություններն ու որոշեն իրենց բնագծերը, հաշվեն, թե ինչ աղբյուրների հաշվին է այս տարի բարձրացվելու մշակվող կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը։

Ագիտատորը գտնվելով գյուղատնտեսության հետագա վերելքի համար մղվող պայքարի ավանգարդում, չի կարող հանդուրժել թերությունները։ Նա գործնական օգնություն ցույց կտա սկզբնական պարտիական կազմակերպություններին արագ կերպով վերացնելու այն բոլոր թերությունները, որոնք խոչընդոտում են գարնան գյուղատնտեսական աշխատանքները բարձր կազմակերպվածությամբ անցկացնելու գործին։ Ագիտատորը պետք է ամեն ջանք գործ դնի, որպեսզի տեղում եղած ռեզերվներն ավելի արդյունավետ օգտագործվեն։

Այժմ գյուղական պարտիական կազմակերպությունների առջև շատ պատասխանատու խնդիրներ են դրված՝ արտադրության նորա-



րարների փորձը դարձնել գյուղի միլիոնավոր աշխատավորների սեփականությունը։ Ինչ խոսք, որ մեր ագիտատորները ջանք չեն խնայի և կանեն ամեն բան, որպեսզի գյուղատնտեսության առաջավորների փորձը սովորեն բոլորը, բոլորը աշխատեն առաջավորների օրինակով։

Առաջավորների փորձը տարածելուն մեծապես կնպաստի այն հանգամանքը, որ ագիտատորները սիստեմատիկաբար մասսայականացնեն սոցիալիստական մրցության արդյունքները, որոնք միշտ ամփոփում են պարտիական կազմակերպությունները։ Մրցության արդյունքները մասսայականացնելու միջոցով յուրաքանչյուր աշխատող կիմանա, թե ով ինչպես է կատարում իր ստանձնած պարտավորությունները։

Շուտով, մարտի 17-ին տեղի կունենան Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի և տեղական սովետների ընտրությունները։ Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները նոր հաջողություններով կնշանավորեն հայ ժողովրդի քաղաքական կյանքում տեղի ունեցող այդ խոշորագույն իրադարձությունը։

# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

Կանանց միջազգային օրը՝ Մարտի 8-ը ամբողջ աշխարհի կանանց տրադիցիոն տոնն է։ Այդ տոնը սահմանվել է 53 տարի առաջ, 1910 թվականին, Կոպենհագենում տեղի ունեցած սոցիալիստ կանանց կոնֆերանսում, գերմանացի կոմունիստ Կլարա Ցետկինի առաջարկով։ Այդ նշանակալի օրը դարձել է բովանդակ աշխարհի աշխատավոր կանանց համերաշխության օրը։

Ռուսաստանում կանանց միջազգային օրն առաջին անգամ հաջողվել է տոնել 1913 թվականին։

Կանանց միջազգային օրը՝ Մարտի 8-ը ազատության ուղին հեշտ չէր։ Այդ դժվարին ճանապարհին նրանք սկզբում կանգնեցին երկչոտ, իսկ ապա ավելի ու ավելի համարձակորեն։ Բոլշևիկյան պարտիան, նրա մեծ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինը ջերմորեն պաշտպանում էին ու գլխավորում կանանց ռևոլյուցիոն պայքարը։ Յուրաքանչյուր ռևոլյուցիոն նյութի համար բանվորուհիներին



սպառնում էր բանտ, տաժանակրություն, աքսոր։ Սակայն չնայելով այդ հալածանքին, իրենց ազատագրության համար պայքարի էին ելնում ավելի ու ավելի շատ կանայք։

Կոմունիստական պարտիան իր գործունեության առաջին իսկ օրերից կանանց իրավահավասարության, նրանց տնտեսական ու քաղաքական ազատագրության գործը դիտել է որպես բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարի կարևորագույն բաղկացուցիչ մասը։ Վլադիմիր Իլյիչ Լենինը նշում է, որ կենցաղում և հասարակության մեջ կնոջ իրավազուրկ վիճակը կապիտալիստական հասարակարգի ծնունդ է և, որ այդ հասարակարգի ոչնչացումը կապահովի կնոջ լիակատար ազատագրումը։

Իրոք, միայն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան ազատագրեց կնոջը։ Սովետական կանայք աշխարհում առաջինը ստացան ազատություն։ Սովետական իշխանությունը օրենսդրականորեն կանանց տվեց տղամարդկանց հետ համահավասար քաղաքական, աշխատանքային, քաղաքացիական, ամուսնական և ընտանեկան իրավունքներ, մոր ու մանկան պաշտպանությունը դարձրեց պետական կարևորագույն գործ։

Մեր երկրի կանայք իրենց անձնուրաց աշխատանքով նվաճել են պատիվ ու հարգանք։ Նրանք սովետական պետության զարգացման բոլոր էտապներում ակտիվորեն մասնակցել են նոր կյանքի կառուցմանը։ Կանայք հերոսաբար մարտնչել են Հոկտեմբերի բարիկադներում, անօրինակ սխրագործություններ կատարել քաղաքացիական պատերազմի տարիներին։ Հայրենական մեծ պատերազմի օրերին սովետական հայրենասեր կանայք անձնվիրաբար օգնում էին Կարմիր բանակին։ Նրանք հիտլերականների դեմ կատաղի կռիվ էին մղում պարտիզանական ջոկատներում, հրետանային ու ականանետային կրակի տակ բժշկուհիները, բուժքույրերը հերոսաբար փրկում էին վիրավոր մարտիկների կյանքը։ Հազարավոր հայրենասիրուհիներ իրենց արյունն էին տալիս փրկելու սովետական ռազմիկներին։ Նրանք մեքենաների ու հաստոցների առջև կանգնած փոխարինում էին իրենց հայրերին, եղբայրներին ու ամուսիններին, աշխատում տասնապատիկ ավելի, քան մինչև պատերազմը։

Հետպատերազմյան տարիներին սովետական կանայք իրենց բոլոր ուժերն ու գիտելիքները նվիրաբերել են կոմունիստական շինարարության մեծ գործին։

Այս տարի մեր երկրում Մարտի 8-ը նշվում է էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացման նոր խոշոր հաջողությունների պայմաններում, քաղաքական ու աշխատանքային այն խանդավառության պայմաններում, որ առաջ է բերել Սովետական Միության կոմունիստական պարտիայի պատմական XXII համագումարի որոշումների կենսագործման համար ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցությունը։ Սովետական բոլոր մարդկանց հետ միասին, կանայք ջերմորեն լծվել են պարտիայի մշակած կոմունիստական շինարարության վիթխարի ծրագրի կենսագործմանը։

Գնալով ավելի ու ավելի նշանակալից է դառնում կանանց դերը մեր երկրի ժողովրդական տնտեսության մեջ։ ՍՍՌՄ-ում կանայք կազմում են բանվորների ու ծառայողների ընդհանուր թվի 48 տոկոսը։ Մեր ժողովրդական տնտեսության մեջ կա բարձրագույն և մասնագիտական կրթություն ունեցող ավելի քան հինգ միլիոն կին։ Դա կազմում է բարձրագույն կրթությամբ մասնագետների ավելի քան հիսուն տոկոսը։

Սովետական կանայք բեղմնավոր աշխատանք են կատարում լուսավորության և առողջապահության ասպարեզում։ Երկրում կա 300 հազարից ավելի բժշկուհի, մեկ միլիոն չորս հարյուր հազարից ավելի ուսուցչուհի։ Գիտական աշխատանք են կատարում 150 հազարից ավելի կանայք, որից 31 հազարը ունեն դոկտորի կամ գիտության թեկնածուի կոչում, մոտ 800 կանայք ակադեմիկոսներ են, ակադեմիաների թղթակից անդամներ։ Հիշատակության արժանի է այն փաստը, որ ցարական Ռուսաստանում կանանց միայն 13,7 տոկոսն էր գրագետ։

Վ. Ի. Լենինը խոշոր նշանակություն էր տալիս աշխատավոր կանանց լայն խավերի ներգրավմանը պետության կառավարման գործին։ Դեռևս 1920 թվականին, Մոսկվայի սովետի ընտրությունների օրերին Լենինն ասում էր. «Ավելի շատ բանվորուհիներ ընտրեցեք սովետում, ինչպես կոմունիստներից, այնպես էլ անպարտիականներից»։ Այդ ցուցումները կատարվում են ճշտությամբ։ Սովետական ժողովուրդը համարձակորեն կանանց առաջ է քաշում պետության կառավարման գործում՝ սկսած տեղական սովետներից մինչև մեր երկրի պետական իշխանության բարձրագույն օրգանը՝ ՍՍՌՄ Գե-





րագույն սովետը։ 1922 թվականին ՍՍՌՄ կենտրոնական գործադիր կոմիտեի անդամներից միայն հինգն էին կանայք, այնինչ, այժմ սովետական ժողովրդի 390 լավագույն դուստրերը ՍՍՌՄ Գերագույն սովետի դեպուտատներ են։ Դա գերազանցում է կապիտալիստական բոլոր պետությունների պառլամենտներում եղած կանանց թվին միասին վերցրած։ Միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների գերագույն սովետների դեպուտատների մեջ կան ավելի քան 2.530 կանայք։ ԱՄՆ-ի կոնգրեսում ընտրված են 17, իսկ Ֆրանսիայի ազգային ժողովում և սենատում՝ 13 կանայք։

Միլիոնավոր սովետական կանայք մասնակցում են պարտիական, արհմիութենական, երիտասարդական, կանանց, կոոպերատիվ և այլ հասարակական կազմակերպությունների աշխատանքներին։

Մեր երկրում համաժողովրդական հարգանք են վայելում մայրերը։ Ամեն տարի պետությունը մոր ու մանկան պահպանության համար հատկացնում է ավելի քան մեկ միլիարդ ռուբլի։ Աճող սերնդի առողջության պահպանության համար հոգ են տանում հիսուն հազարից ավելի մանկաբույժներ։ Քաղաքներում ու գյուղերում շարունակվում է

մանկական ու կանանց կոնսուլտացիաների, պոլիկլինիկաների, ծննդատների ցանցի ընդլայնումը։ Մոտ տասը միլիոն կանայք պարգևատրվել են «Հերոսուհի մայր», «Մայրության փառք» շքանշաններով և «Մայրության մեդալ» մեդալով։

Կանանց անձնվեր աշխատանքը բարձր է գնահատվել պարտիայի ու կառավարության կողմից։ Սովետական Միության Հերոսի կոչման են արժանացել 76 կանայք։ Մոտ 2.876 կանանց շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։ Շքանշաններով ու մեդալներով պարգևատրվել են միլիոնավոր կանայք։

Երկրի քաղաքական ու հասարակական կյանքին կանանց ակտիվորեն ներգրավելու հիանալի օրինակ է մեր ռեսպուբլիկան։ Երբեմնի խղճուկ հայ գեղջկուհին այժմ դարձել է ինժեներ, բժշկուհի, ղեկավարում է կոլտնտեսություններ ու սովխոզներ, հրամանատարական պոստեր է գրավում արտադրական ձեռնարկություններում։ Սովետական Հայաստանում արդյունաբերության մեջ աշխատողների 37 տոկոսը կանայք են։ Կոլտնտեսային գյուղում նրանք կազմում են 58 տոկոսը։ Մոտ երկու հազար կանայք աշխատում են որպես գյուղատնտեսներ, զոո-



տեխնիկներ, անասնաբույժներ։ Առողջապահության մեջ կանայք կազմում են 76 տոկոսը, լուսավորության բնագավառում՝ 54 տոկոսը։ Բարձրագույն կրթությամբ մասնագետների կեսից ավելին կանայք են, իսկ գիտության ասպարեզում աշխատողների՝ մեկ երրորդը։

Ռեսպուբլիկայի Գերագույն սովետի դեպուտատների 32 տոկոսը կանայք են։ Տեղական սովետներում նրանք կազմում են դեպուտատների ընդհանուր թվի 37 տոկոսը։

Հանուն խաղաղության, հանուն ընդհանուր և լրիվ զինաթափման, ատոմային պատերազմի սպառնալիքի դեմ պայքարի են ելնում կանանց նորանոր ջոկատներ։ Այդ պայքարում առջևից են ընթանում սովետական կանայք։ Նրանք ջերմորեն պաշտպանում են Սովետական կառավարության խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը։ Նրանք հպարտանում են, որ աշխարհի խաղաղության համար պայքարի ավանգարդում է մեր հզոր երկիրը՝ Սովետական Միությունը։ Խաղաղության մեծ մունետիկ Ն. Ս. Խրուշչովը վերջերս ֆրանսիական հեռուստատեսությանն արած հայտարարության մեջ ասաց.

«Կոմունիզմը, որ մենք կառուցում ենք

մեր երկրում, հաստատում է խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն և Երջանկություն բոլոր մարդկանց համար։ Ոչ միայն մեզ, այլև աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց հարկավոր է խաղաղություն, և ոչ թե պատերազմ ու փլատակներ։ Խաղաղություն է հարկավոր նաև Սովետական Միության, Ֆրանսիայի, մեր ամբողջ մոլորակի մայրերին, որպեսզի նրանք աներկյուղ մեծացնեն իրենց երեխաներին։ Համայն մարդկությանը, բովանդակ աշխարհի ժողովուրդներին հարկավոր է ոչ թե մահ ու բնաջնջում, այլ կյանք ու ստեղծարար աշխատանք»։

Մարտի 8-ի օրը ամբողջ երկրագնդի միլիոնավոր կանայք նորից ցույց կտան իրենց վճռականությունը՝ պայքարելու ատոմային պատերազմի, սովի և աղքատության դեմ, կանանց իրավահավասարության համար, որ ոտնահարվում է կապիտալիստական երկրներում։ Սովետական կանայք, ժողովրդական դեմոկրատիայի երկրների կանանց հետ, մի անգամ ևս կցուցադրեն իրենց միասնությունը բոլոր երկրների աշխատավոր կանանց հետ ընդդեմ պատերազմի, հանուն ամբողջ աշխարհի խաղաղության։

ՎԻԿՏՈՐՅԱ ԳՐԻԳՈՐՅԱՆ



# ԱԳԻՏԱՏՈՐ ՍՈՐՈԿԻՆԻՑ ՇԱՏ ԲԱՆ ՍՈՎՈՐԵՑԻՆՔ

«Ասում են, ինչքան մարդ՝ այնքան բնավորություն, կամ թե՝ «ամեն սիրտ իր բանալին ունի»։ Դա, իհարկե, ճիշտ է։ Տարբեր մարդկանց նկատմամբ տարբեր մոտեցում է պետք։ Բայց կա մի այնպիսի բանալի, որը բոլոր սրտերին էլ հարմար է՝ սրտակցությունը»։ Լավ է ասել Լենինգրադի Սերգո Օրջոնիկիձեի անվան Բալթիական նավաշինական գործարանի ագիտատոր Ն. Սորոկինը։

Վերջերս Երևանի Շահումյանի շրջանի գուլպայի ֆաբրիկայի ագիտատորների դըպրոցի պարապմունքում քննարկվեց ագիտատոր Ն. Սորոկինի «Ագիտատորի պարտքի մասին» հոդվածը։ Ագիտատորները նշեցին, որ ագիտացիոն աշխատանքի առաջավոր մեթոդները օգնում են ավելի խոր թափանցել մարդկանց հոգու մեջ, ավելի կոնկրետ ու անհատական դաստիարակչական աշխա-

տանք կատարել մարդկանց հետ, այն օգնում է ավելի շատ սրտակցություն հանդես բերել մարդկանց նկատմամբ, ճիշտ ըմբռնել նրանց ձգտումներն ու ապրումները։ Ագիտատորների դպրոցի ղեկավար, կարող ցեխի վարիչ ընկ. Ա. Անտոնյանը իր ելույթում խոսելով ագիտացիոն աշխատանքի լավագույն փորձի մասին նշեց, որ պետք է սովորել ունկնդիրների հետ խոսել ինչպես բարեկամ, ինչպես ընկեր, ինչպես հավասարը հավասարի հետ։

Ագիտատոր Սորոկինի խոսքերը մարդկանց նկատմամբ ջերմ սրտակցության և հոգատարության մասին բխում է մեր սրտերից,— ասում է նույն ֆաբրիկայի ներկող ցեխի ագիտատոր Ն. Որբերյանը։

Գուլպայի ֆաբրիկայի ագիտատոր, ենթավարպետ ընկ. Դանիել Զարիկյանը բանվորների իսկական հոգատար և սրտակից ընկերն է։ Նա իր բազմաթիվ զրույցների ընթացքում շատ արժեքավոր խորհուրդներ է տալիս բանվորներին։ Նա սիստեմատիկաբար պրոպագանդում է արտադրության առաջավորների փորձը։

Խոսելով ագիտատոր Սորոկինի ագիտացիոն աշխատանքի փորձի վերաբերյալ, նա նշեց, որ մարդասիրության և ընկերական



փոխադարձ օգնության մասին բանվորների հետ անցկացրած իր զրույցները իրենց գործնական արտահայտությունն են գտնում ցեխի բանվորական կոլեկտիվի հարաբերությունների մեջ։ Այսպես, օրինակ, երբ ֆաբրիկան ստացավ նոր գործող մեքենաներ, գործվածքային ցեխի բանվորները դժվարանում էին օգտագործել դրանք։ Նրանց մեծ օգնություն ցույց տվեց վարպետ ընկ. Հ. Բարղակչյանը, որը հասարակական կարգով 25 բանվորների սովորեցրեց նոր մեքենաների օգտագործման տեխնոլոգիան։ Այդ ընկերական փոխադարձ օգնության շընորհիվ բանվորները կարճ ժամանակամիջոցում կարողացան տիրապետել նոր մեքենաների օգտագործման տեխնոլոգիային և այժմ աշխատում են բարձր արտադրողականությամբ։

Պարզաբանելով և բանվորների գիտակցությանը հասցնելով ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումները, ընկ. Զարիկյանը լուրջ ուշադրություն է դարձնում ֆաբրիկայի առջև դրված խնդիրների կատարման վրա։

Ագիտատորի ակտիվ մասնակցությամբ գործվածքային ցեխում ծավալվել է սոցիալիստական մրցությունը և աշխատանքի ա-

ռաջավոր մեթոդների արմատավորումը, որը նպաստում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Ագիտատորը կարողանում է թափանցել մարդկանց հոգու մեջ, սրտակից բարեկամական վերաբերմունք է ցուցաբերում մարդկանց նկատմամբ։ Այդպիսի անկեղծ և մտերմական հարաբերությունների շնորհիվ բանվորները ագիտատորին պատմում են իրենց հուզող հարցերի և հոգսերի մասին։ Վերջերս անցկացրած զրույցի ժամանակ բանվորները խոսեցին նաև ֆաբրիկայի ճաշարանի թերությունների մասին։ Ճաշարանը լավ չէր սպասարկում բանվորներին, ճաշերն անորակ էին պատրաստում, լուրջ ուշադրություն չէր դարձվում բանվորների սննդի կազմակերպման և ճաշարանի սանիտարական վիճակի վրա։ Այս հարցը հուզեց նաև ագիտատոր Զարիկյանին։ Նա ճաշարանի վիճակը բարելավելու հարցով խոսեց ֆաբրիկայի պարտիական և պրոֆմիութենական կազմակերպությունների ղեկավարների և դիրեկտորի հետ։ Ֆաբրիկայի դիրեկցիան և պրոֆմիութենական կազմակերպությունը ձեռնարկեցին որոշ միջոցառումներ և այժմ ճաշարանում վիճակը բոլորովին փոխվել է։

Ազնվության ու նվիրվածության օրինակ-



ներով մարդկանց դաստիարակելու նպատակով, գուլպայի ֆաբրիկայում անցկացվեց կոմունիստական աշխատանքի բրիգադների անդամների տեսական կոնֆերանս, որտեղ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք ունենալու մասին զեկուցեց ներկող ցեխի վարիչ, ագիտատոր ընկ. Ն. Ոբերյանը։ Ագիտատորը պատմեց բանվորների մեջ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու իր փորձի մասին։ Նա կոնկրետ փաստերով և օրինակներով ցույց տվեց, որ ֆաբրիկայում աշխատող շատ մարդկանց ազնիվ, անաղարտ, համեստ ու անձնվեր վարմունքի անձնական օրինակները արագ կերպով տարածվում են բանվորների շրջանում և դառնում բնավորության գիծ։

Ներկող ցեխի առաջավոր բանվորներ ընկերներ Ժ. Սաղաթելյանը, Զ. Կարապետյանը, Հ. Տերտերյանը, Ջ. Այանյանը, որոնք տիրապետում են մի քանի մասնագիտությունների, մշտապես ընկերական փոխադարձ օգնություն են ցույց տալիս ինչպես միմյանց, այնպես էլ մյուս բանվորներին։ Ներկող ցեխի բանվորների կոլեկտիվը աշխատում է մեկ նշանաբանով՝ մեկը բոլորի համար՝ բոլորը մեկի համար։

Ֆաբրիկայում հաճախակի կազմակերպ-
վում են դաստիարակչական այնպիսի մի-
ջոցառումներ, որոնք նպաստում են բան-
վորների մեջ անկեղծ, ընկերական ու ազնիվ
հարաբերությունների ստեղծմանը։ Բանվոր-
ների միջև ընկերական փոխադարձ հարա-
բերություններ են ստեղծված աշխատանքում
և կենցաղում։ Օրինակ, ֆաբրիկայի բանվոր-
ները հաճախակի միասին կինո նկարներ և
թատերական ներկայացումներ են դիտում,
փորձի փոխանակման կարգով ծանոթանում
ռեսպուբլիկայի նույնատիպ ձեռնարկու-
թյունների աշխատանքի հետ, հաճախում
ցուցահանդեսներ, թանգարաններ և այլն։

Աշխատավորության շրջանում տարվող
քաղաքական աշխատանքի լավագույն փոր-
ձի մասսայականացումը կօգնի մարդկանց
հետ կատարվող դաստիարակչական աշխա-
տանքը դարձնել ավելի կոնկրետ, կենդանի
ու գործնական, ավելի խոր թափանցել
մարդկանց հոգու և սրտի մեջ, ավելի շատ
նրտակցություն հանդես բերել մարդու նր-
կատմամբ, հոգատար և զգայուն լինել աշ-
խատավորներին հուզող հարցերը լուծելու
համար։

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ՀԿՊ Շահումյանի շրջկոմի պրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի վարիչ



# ՅՈԹՆԱՄՅԱԿԻ ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ

Մեր երկրի աշխատավորները իրագործելով ՍՄԿԿ
XXII համագումարի պատմական որոշումները, յոթ-
նամյակի չորրորդ տարին՝ 1962 թվականը ավարտեցին
նոր հաջողություններով՝ ՍՍՌՄ էկոնոմիկայի զարգաց-
ման, ժողովրդի բարեկեցության և կուլտուրական մա-
կարդակի բարձրացման գործում: Ահա թվեր և փաս-
տեր այդ մասին:

Երկրի արդյունաբերությունը գերակատարել է
արտադրանքի արտադրության 1962 թվականի տարե-
կան պլանը։

Յոթնամյակի անցած չորս տարում արդյունա-
բերության համախառն արտադրանքը 1962 թվակա-
նին ավելացավ 45 տոկոսով, որը 6 տոկոսով ավելի
է յոթնամյա պլանով այդ տարիների համար նախա-
տեսվածից։

Անցած չորս տարում նախատեսվածից ա-
վելի է արտադրվել 28 միլիարդ ռուբլու արտադրանք։

Մեծ նվաճումներ են ձեռք բերվել արդյունաբերության տարբեր ճյուղերում։ 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, ավել է արտադրվել. չուգուն՝ 109 տոկոսով, պողպատ՝ 108, գլանվածք՝ 107, պողպատե խողովակ՝ 114, երկաթի հանքաքար՝ 109 տոկոսով։

Երկրի ժողովրդական տնտեսությունը 1962 թվականին ստացել է. նավթ՝ 186 միլիոն տոննա, գազ՝ 75,2 միլիարդ խորանարդ մետր, ածուխ՝ 517 միլիոն տոննա, էլեկտրաէներգիա՝ 369 միլիարդ կիլովատ-ժամ, հանքային պարարտանյութ՝ 17,3 միլիոն տոննա։

Անցած տարի մեր երկրի ժողովրդական տնտեսությունը ստացավ 617 մագիստրալային էլեկտրաքարշ, 1.483 մագիստրալային ջերմաքարշ-սեկցիա, 837 տրոլեյբուս, 578 հազար ավտոմոբիլ, 17,1 հազար էքսկավատոր, 20.8 միլիոն ավտոդող։

Երկրի գյուղատնտեսությունը 1962 թվականին ստացավ 1.168 միլիոն ռուբլու գյուղատնտեսական տարբեր մեքենաներ, 287 հազար տրակտոր, 141 հազար տրակտորի գութան, 162 հազար տրակտորի շարքացան, 122 հազար տրակտորի կուլտիվատոր, 79,8 հազար հացահատիկի կոմբայն, 26,9 հազար եգիպտացորենի կոմբայն, 10,1 հազար ճակնդեղի կոմբայն, 47,5 հազար սիլոսի կոմբայն, 6,1 հազար



չանաքի մեքենա, 97,6 հազար տրակտորի հնձիչ, 73,9 հազար շարահնձիչ, 59,3 հազար կթի սարք և այլն։

Միայն 1962 թվականին փոխադրվել է 245 միլիոն խորանարդ մետր շինափայտ (առանց կոլտնտեսությունների փայտամթերումների)։ Արտադրվել է 2,8 միլիոն տոննա թուղթ, 57,3 միլիոն տոննա ցեմենտ, 41 միլիոն խորանարդ մետր հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիա, 3,7 միլիարդ պայմանական սալիկ շիֆեր, 850 միլիոն քառակուսի մետր փափուկ ծածկ, 166 միլիոն քառակուսի մետր լուսամուտի ապակի։

Մեր երկրի թեթև արդյունաբերության աշխատողները 1962 թվականին արտադրեցին 4,9 միլիարդ քառակուսի մետր բամբակե գործվածք, 469 միլիոն քառակուսի մետր բրդե գործվածք, 485 միլիոն քառակուսի մետր վուշե գործվածք, 787 միլիոն քառակուսի մետր մետաքսե գործվածք, 9,7 միլիարդ ռուբլու կարվածքեղեն, 520 միլիոն տրիկոտաժե սպիտակեղեն, 125 միլիոն տրիկոտաժե վերնազգեստ, 456 միլիոն զույգ կաշվե կոշիկ, 34 միլիոն զույգ թաղիքե կոշիկ։

Անցած տարի մեր երկրի բնակչությունը ստացավ 26,1 միլիոն ամեն տեսակի ժամացույց, 4,3 միլիոն ռադիոընդունիչ և ռադիոլա, 2,2 միլիոն հեռուստացույց, 838 հազար սառնարան, 1.8 միլիոն

լվացքի մեքենա, 3,3 միլիոն կարի մեքենա, 1,5 միլիարդ ռուբլու կահույք:

Անցած տարի, 1961 թվականի համեմատությամբ, մեր երկրում զգալիորեն ավելացավ մթերքների արտադրությունը: Միայն 1962 թվականին արտադրվել է 9,4 միլիոն տոննա միս (սպանդանոցային քաշով), 1,4 միլիոն տոննա երշիկեղեն, 940 հազար տոննա յուղ, 9,3 միլիոն տոննա անարատ կաթնամթերք՝ կաթի վերածած, 208 հազար տոննա պանիր, 7,8 միլիոն տոննա շաքար և շաքարավազ, 1,9 միլիոն տոննա հրուշակեղեն, 5,9 միլիարդ տուփ պահածո և այլն:

Անցած տարում յուրացվել և ՍՍՌՄ-ում առաջին անգամ պատրաստվել են արտադրանքի մոտավորապես 900 նոր կարևորագույն տեսակներ: Միևնույն ժամանակ անցյալ տարվա ընթացքում արտադրությունից հանվել են հնացած կոնստրուկցիայի մոտավորապես 350 անուն մեքենաներ, սարքավորումներ ու գործիքներ:

Միայն 1962 թվականին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ձեռնարկություններում մտցվել է արտադրության բարելավման ու կատարելագործման մոտավորապես 4 միլիոն 200 հազար առաջարկ: Ընդամենը արմատավորվել են ավելի քան 2 միլիոն 700 հազար գյուտ և ռացիոնալիզատորական առաջարկ, որոնք տալիս են տարեկան մոտավորա-



պես մեկ միլիարդ 600 միլիոն ռուբլու խնայողություն:

Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, բարձրացել է 6 տոկոսով: Իսկ ամբողջ արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցումից ստացված գերպլանային խնայողությունը կազմել է մոտավորապես մեկ միլիարդ ռուբլի:

Ինչպես անցած տարի, այնպես էլ նախորդ տարիներին, ՍՍՌՄ-ը նոր հաջողություններ ձեռք բերեց ԱՄՆ-ի հետ տնտեսական խաղաղ մրցության մեջ: 1961 թվականի համեմատությամբ ՍՍՌՄ-ում բնակչության մեկ շնչին ընկնող պողպատի արտադրությունն աճել է 6 տոկոսով, իսկ ԱՄՆ-ում կրճատվել է մեկուկես տոկոսով, էլեկտրաէներգիայինը ՍՍՌՄ-ում ավելացել է 11 տոկոսով, իսկ ԱՄՆ-ում ավելացել է 6 տոկոսով և այլն:

Վերջին հինգ տարում բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի աճը ՍՍՌՄ-ում կազմել է 48 տոկոս, իսկ ԱՄՆ-ում՝ միայն 8 տոկոս:

Տարեց-տարի ծաղկում ու բարգավաճում է մեր երկրի էկոնոմիկան: Վերը բերված տվյալները վկայում են, որ մենք մի նոր խոշոր քայլ ենք կատարել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում:

---

## ՆԵՆԳ ԴԵՄՈԿՐԱՏԻԱ

«Ես ընդհանուր ընտրական իրավունքին չեմ հավատում, քանի որ այն հաշվի չի առնում մարդկանց միջև գոյություն ունեցող տարբերությունները: Ես հավասարության չեմ հավատում, ես հավատում եմ հիերարխիային»:

Ուղղակի ասենք. արդի կապիտալիստական աշխարհի քաղաքական գործիչները գերադասում են հանդես չգալ այս չափ բացահայտ հայտարարությամբ, որ վերջերս արեց պորտուգալական դիկտատոր Սալազարը: Ընդհակառակը, նրանց ամբողջ հսկայական պրոպագանդիստական ապարատը դիշեր-ցերեկ գովերգում է բուրժուական տխրահռչակ ազատությունները և հատկապես պետական իշխանության ու կառավարման օրգանների «դեմոկրատականությունը»:

Սակայն բուրժուական դեմոկրատիայի «հրաշալիքների» վերաբերյալ աղմկալի ռեկլամները բնավ ի վիճակի չեն քողարկելու բուրժուական պետությունների իսկական կառավարողների՝ արդյունաբերական ու ֆինանսական խոշոր կապիտալի դրածոների աղաղակող ապօրինությունը և կոպիտ կամայականությունը: Իրենց իշխանությունն ամրապնդելու համար, հանուն շահույթների և նեղ էգոիստական մյուս շահերի, նրանք ավելի ու ավելի ակտիվորեն են հարձակվում աշխատավորների նույնիսկ այն իրավունքների վրա, որոնք մի ժամանակ ամրապնդված են եղել կոնստիտուցիաներում և օրենքներում:

Միացյալ Նահանգների կոնստիտուցիայում հռչակված է բոլոր մարդկանց հավասարություն:
Այդ թղթե դեկլարացիայի իսկական գինն ամբողջ աշխարհին հայտնի է աշխատավոր մարդկանց համար ստորացուցիչ այն ոստիկանական տեռորի և ռասսայական խտրականության սանձարձակությունով, որոնք ժամանակ առ ժամանակ նույնիսկ դուրս են գալիս ներքին խայտառակությունների շրջանակներից:

ԳՍՄՊ VI համագումարում ունեցած ելույթի ժամանակ Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովն ասել է. «Անցել են այն ժամանակները, երբ Ամերիկայի Միացյալ Նահանգները հպարտանում էին, թե իրենց կոնստիտուցիան ամենադեմոկրատականն է: Նրանք ավելի ու

ավելի կոպիտ կերպով են ոտնահարում այդ կոնստիտուցիան և աշխատավորների տարրական դեմոկրատական իրավունքներն ու ազատությունները»:

Միացյալ Նահանգների այսօրվա կյանքից վերցված փաստերը հաստատում են այս խոսքերի ճշտությունը: ԱՄՆ-ի օրենսդրության մեջ կա մի հոդված, որն արգելում է քաղաքացիներին ընտրական իրավունքներից զրկել ռասսայական պատկանելիությունից ելնելով: Բայց երկրի շատ նահանգներում, հատկապես հարավում, որտեղ նեգրերի տոկոսն ամենամեծն է, այդ իրավունքը սահմանափակված է անհաղթահարելի պատնեշով: Օրինակ, նեգրերից, որոնց կրթության ճանապարհը դիտավորյալ փակվում է, պահանջում են հիշողությամբ գրել կոնստիտուցիայի հոդվածները և տալ դրանց բացատրությունը:

Մի շարք նահանգներում քվեարկելու իրավունք ստանալու համար նեգրին ստիպում են լրացնել ամենաանիմաստ հարցեր պարունակող հարցաթերթիկներ: Ամերիկյան մամուլում հաղորդվել է, որ սանձարձակ ռասիստներն ընտրող նեգրից պահանջել են պատասխանել այն հարցին, թե... մի կտոր օճառից քանի փուչիկ կստացվի: Չնայած



գրագիտության այդպիսի «ստուգման» պարզապես ծաղրական բնույթին, կառավարությունը ոչինչ չի արել խտրական օրենքները վերացնելու համար:

Բուրժուական երկրներում ընտրողների՝ հանդիսավորությամբ հռչակված հավասարությունը միայն թղթի վրա է: Ըստ «Ամերիկյան ժառանգության ֆոնդ» կազմակերպության տեղեկությունների, կամպանիաներից մեկի ժամանակ ցենզային բազմաթիվ արգելքների պատճառով ձայնի իրավունքից զրկվել է ավելի քան տասնյոթ միլիոն ամերիկացի: Նման արգելքներ գոյություն ունեն նաև բուրժուական մյուս երկրներում: Դրանց մեծ մասում բարձր է տարիքային ցենզը: Օրինակ, Անգլիայում ընտրական քվեատուփերի մոտ են թողնվում միայն քսանմեկ տարին լրացած քաղաքացիները:

Կապիտալի երկրների ընտրողների զգալի մասը ձայնի իրավունքից զրկվում է նստակեցության ցենզի պատճառով: Միայն այդ ցենզով 1960 թվականին ԱՄՆ-ում ընտրություններին չի մասնակցել ութ միլիոն քաղաքացի: Անգլիայում այն անձինք, որոնք ժամանակին չեն մտցվում ընտրական ցուցակների մեջ կամ նոր օկրուգ են գալիս սահմանված ժամկետից հետո, կորցնում են ձայնի իրավունքը և պետք է վերադառ-

նան ու քվեարկեն հին բնակավայրերում։ Պառլամենտի լեյբորիստ անդամ Արթուր Վուդբեռնը մի անգամ հայտարարել է, որ այդպիսի ընտրակարգի հետևանքով ընտրություններին մասնակցելու իրավունքից կարող է զրկվել ընտրողների մոտավորապես կեսը։

Անգլիայում լայնորեն տարածված է ընտրական օկրուգների սահմանները շարունակ վերաձևելու մեթոդը։ Բանվորներով բնակեցված շրջանները դիտավորյալ մասնատվում են և մաս-մաս մտցվում այն օկրուգների մեջ, որոնք հայտնի են որպես աջերի հենակետեր։ Դա պահպանողականներին մի քանի լրացուցիչ մանդատ է ապահովում պառլամենտում։

Բուրժուական կոնստիտուցիաները պարզապես ձևականորեն են դեկլարացիայի ենթարկում նաև քվեարկության գաղտնիությունը։ Ամերիկայի մի քանի նահանգներում ընտրողներից պահանջում են լրացնել հատուկ հարցաթերթիկներ, որտեղ քվեարկողը պետք է նշի, թե որ պարտիային է պաշտպանում։ Անգլիայում ընտրական բյուլետենները համարակալված են և այդ համարը համապատասխանում է ընտրական հանձնաժողովի մոտ մնացող արմատի համարին։ Քանի որ արմատի վրա գրվում է ընտրողի ազ-



գանունը, ապա դժվար չէ պարզել, թե ով է նա և ում օգտին է քվեարկել։

Կապիտալիստական երկրների ընտրությունների պատմությունը լի է ընտրողներին ահաբեկելու և կաշառելու փաստերով, անհնազանդների հետ ֆիզիկական հաշվեհարդար տեսնելու, ընտրությունների արդյունքները կեղծելու դեպքերով։ Այդպիսի սիստեմի պատճառով հասարակ մարդիկ չեն ցանկանում մասնակցել ընտրություններին։ Օրինակ, Միացյալ Նահանգներում վերջին քառասուն տարում պրեզիդենտական ընտրություններին չի մասնակցել ընտրողների 35—52 տոկոսը։

Իրենց կեղտոտ նպատակներին հասնելու համար իշխանության տերերը ծախսում են հսկայական գումարներ։ Այդ տեսակետից բնորոշ էին ԱՄՆ-ում անցյալ տարվա նոյեմբերին անկացրած այսպես կոչված միջանկյալ ընտրությունները։ Ինչպես հայտնի է, այն ժամանակ լրիվին վերընտրվում էին կոնգրեսի ներկայացուցիչների պալատը, սենատի մեկ երրորդը և երեսունյոթ նահանգապետեր։ Նույնիսկ ամերիկյան մամուլն այդ ընտրություններն անվանեց «միլիոնատերերի ճակատամարտ»։ Այլ անուն տալ չէր էլ կարելի։ Օրինակ, Նելսոն Ռոկֆելլերը, անպայ-

ման Նյու-Յորքի նահանգապետ ընտրվելու համար (իսկ դա համարվում է պրեզիդենտ ընտրվելու ցատկաքարձ), կամպանիա մղելու վրա ծախսել է ավելի քան մեկ միլիոն դոլար։

Պենսիլվանիայի նահանգում, որտեղ նահանգապետի պոստում ընտրվելու համար ռեսպուբլիկական պարտիայի կողմից առաջադրվել էր միլիոնատեր Ուիլյամ Սկրենտոնը, ռեսպուբլիկականների ընտրական բյուջեն հասնում էր երկու և կես միլիոն դոլարի։ Մասաչուսետսի նահանգից գերմիլիոնատեր Էդվարդ Քեննեդին և ՄԱԿ-ում Միացյալ Նահանգների նախկին ներկայացուցչի որդին՝ Ջորջ Լոջը, հսկայական միջոցներ ծախսեցին սենատորական աթոռները գնելու համար։

Բուրժուական պրոպագանդան հպարտանում է, թե կապիտալի երկրներում գոյություն ունի բազմապարտիական սիստեմ, որն իբր ընտրողին տալիս է թեկնածուների միջև ընտրություն կատարելու իրավունք։ Թե իրականում իրենից ինչ է ներկայացնում այդ իրավունքը, երևում է ԱՄՆ-ի օրինակից։ Այստեղ իսկապես ընտրական բյուլետենների մեջ մտցվում են մի քանի թեկնածուներ, բայց նրանք, որպես կանոն, առաջադրվում են այն պարտիաների կողմից, որոնք



փաստորեն վարում են միևնույն քաղաքականությունը։ Իսկ եթե այդպիսի պարտիաները նույնիսկ մրցում են իրար հետ, ապա դա սոսկ արվում է հանուն իրենց ֆինանսավորող տերերի շահերի։

Ինչպես հայտնի է, ԱՄՆ-ում իշխանության գլուխ են անցնում կամ ռեսպուբլիկականները, կամ դեմոկրատները։ Բայց այդ պարտիաներից ո՛չ առաջինը, ո՛չ երկրորդը աշխատավոր ժողովրդին չի՛ տվել ո՛չ երջանկություն, ո՛չ կյանքի թեթևացում։ Անշեղորեն աճում է գործազրկությունը (այժմ Ամերիկայում կա մոտ հինգ միլիոն «ավելորդ մարդ»), ավելի է ուժեղանում հարկային ճնշումը, երկիրն ավելի ու ավելի է դառնում «ջագերնաուտ»՝ միլիտարիզմի ճանապարհով սլացող սարսափելի մարտակարգ։

Իսկ եթե բուրժուական պարտիաների ներքաղաքական ծրագրի դեմագոգիկ խոստումներում երբեմն նկատվում են ինչոր տարբերություններ, ապա նրանց արտաքին քաղաքական ծրագրերը, որպես կանոն, նման են ամեն ինչով։

Անցյալ տարվա նոյեմբերյան ընտրությունների ժամանակ Միացյալ Նահանգներում բուրժուական պարտիաներից ոչ մեկը չմըտցրեց միջազգային պրոբլեմների հետ կապ-

ված նոր և կոնստրուկտիվ ոչ մի առաջարկություն: Ինչպես խոստովանում էին նույնիսկ ռեակցիոն տեսաբանները, «պայքար» էր մղվում մանրունքների շուրջը: Թեկնածուներն ավելի շատ ուշադրություն էին դարձնում այն բանի վրա, որ ճոճուն ճառերով, ներկայացումներով, կեղծ երդումներով ու խոստումներով նվաճեն ընտրողների ձայները: Դա լրիվին համապատասխանում էր դեպուտատական մանդատների համար պայքարելու՝ անգլիական քաղաքագետների ձևակերպած հիմնական կանոնին. «Ընտրությունները շահվում են ոչ այնքան սեփական ծրագրի արժանիքների, որքան հակառակորդի ծրագրի թերությունների հաշվին»: Բուրժուական աշխարհում հենց այս նոտաներով է խաղացվում այն դեմագոգիկ ներկայացումը, որը պրոպագանդան գովաբանում է որպես «ազատ ընտրություններ»:

Ինչ վերաբերում է խոստումներին, ապա դեպուտատները՝ բուրժուական պարագլուխները, դրանց մասին մոռանում են քվեարկությունն ավարտելուց անմիջապես հետո: Եվ պատահական չէ, որ անգլիական «Թուդեյ» պատկերազարդ շաբաթաթերթի ընթերցողներից մեկը՝ Գլազգոյի բնակիչ պ-ն



Մեթը, ջղայնացած գրել է. «Միացյալ Նահանգներում հանցանքի մեջ կասկածվող անձանց ստուգում են «ստի դետեկտորով»: Արդյոք ժամանակը չէ՞ այդ օգտակար գործիքով ստուգել մեր քաղաքական գործիչներին, հատկապես այն ժամանակաշրջանում, երբ նրանք հանդես են գալիս նախընտրական ճառերով»:

Դժվար է ասել, թե արդյոք, Մեթը կարդացե՞լ է Վլադիմիր Իլյիչ Լենինի Երկերը, բայց Մեթի խոսքերը և ամբողջ կապիտալիստական իրականությունը վառ կերպով հաստատում են իրավացիությունը մեր մեծ առաջնորդի, որն ասել է, թե բուրժուական դեմոկրատիան, պատմական ինչ ֆոնի վրա էլ այն դիտենք, «միշտ նեղ է, կեղծավոր, խաբեբա, շինծու, միշտ էլ մնում է որպես դեմոկրատիա հարուստների համար, որպես խաբեբայություն՝ աղքատների համար»:

Մեթի նամակը վկայում է նաև այլ բանի մասին. կապիտալիստական երկրների ժողովուրդների գիտակցության մեջ հասունանում է ոչ միայն դժգոհությունը բուրժուական կարգերի անարդարությունից, գունազարդված դեմոկրատիայի այլանդակություններից, այլև կաշառակերությանը, ճնշմանը, մոնո-

պոլիստական կողոպուտին վերջ տալու վճռականությունը։ Անցած տարին աչքի ընկավ կապիտալի բոլոր երկրներում դասակարգային պայքարի սրմամբ, խաղաղության ու պրոգրեսի ուժերի ակտիվացմամբ։

Ռեակցիան համառորեն դիմադրում է դրան։ Ի վիճակի չլինելով մասսաների պահանջները զսպել բուրժուական կոնստիտուցիոն մեքենայի «օրինական մեթոդներով», կառավարող դասակարգերը դիմում են ուղղակի տեռորի, ինչպես նաև դեմոկրատական ազատությունների մնացորդների վերացման։ Ամերիկայի պատմության մեջ խայտառակ էջ է ԱՄՆ-ի կոմունիստական պարտիայի դեմ կազմակերպված դատախաղը։ Մակկարենի օրենքով, որն ընդունվեց 1950 թվականին, քսաներկու կազմակերպություն («Լինկոլնի բրիգադի վետերանները», «Բանվոր երիտասարդության լիգան» և ուրիշներ) մտցված են գրանցման ենթակաների ցուցակի մեջ։ Այլ կերպ ասած, դրանք ճանաչված են որպես «կոմունիստական ճակատի կազմակերպություններ»։ ԱՄՆ-ում ոչ մի պրոֆեսոր չի կարող համալսարանում պաշտոն ստանալ, եթե երդում չտա, որ ինքը չեզոք է։

Բայց, ինչպես նշել է Ն. Ս. Խրուշչովը ԳՍՍՊ VI համագումարում իր ելույթի ժամանակ, հետապնդումը և տեռորիստական գործողությունները ընդդեմ դեմոկրատական և առաջադիմական ուժերի, դեմոկրատական ազատությունների մնացորդները վերջնականապես խեղդելու ռեակցիայի փորձերը վկայում են ոչ թե իմպերիալիզմի ուժի, այլ նրա աճող թուլության մասին։

Կապիտալիզմի հակասությունների խորացման հետևանքով նրա երկրներում այժմ սրվում է դասակարգային պայքարը։ Մեկ բևեռում հավաքվում ու համախմբվում է խաղաղության և առաջադիմության բանակը։ Նրա շարքերն են մտնում բոլոր ազնիվ մարդիկ, իսկական դեմոկրատիայի բոլոր պաշտպանները։ Նրանք ավելի ու ավելի պարզ են գիտակցում այն վտանգը, որ իր դարն ապրող կապիտալիստական կարգը կարող է մարդկությանը նետել միջուկային աղետի հորձանուտի մեջ։

Մյուս բևեռում կենտրոնանում են ռեակցիայի ու պատերազմի հրոսակախմբերը, որոնք հենվում են ամենամութ ուժերի, այդ թվում ֆաշիստական տականքների վրա։ Ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը խեղդելու նպատակով իմպերիալիստական պարագլուխները պաշտպանում են մինչև ուղն ու ծուծը նեխած

*դիկտատորական ռեժիմները, չեն խորշում նույնիսկ բանդիտների և դիվերսանտների հետ բարեկամանալուց, ինչպես վերջերս դա ցուցադրեց պրեզիդենտ Քենեդին, որը հովանավորեց Կուբայից դուրս շպրտված բատիստականներին։*

*Հին աշխարհի պաշտպաններն ինչպես էլ գունազարդեն իրենց դեմոկրատիան, չեն կարող թաքցնել նրա իսկական «պտուղները»։ Այդ դեմոկրատիան ժողովրդական մասսաներին շարունակ բերում է տառապանքներ և աղքատություն, իսկ մոնոպոլիստական գործամոլներին անսպառ հարստություններ։ Աշխարհի հասարակ մարդիկ ավելի ու ավելի են սկսում գիտակցել, որ կապիտալիստական կարգն ապրել է իր դարը։ Աշխատավորներն իրենց հայացքներն ուղղում են դեպի Սովետական Միություն, սոցիալիզմի երկրները, ուր ծաղկում է իսկական դեմոկրատիան, որը նրանց ժողովուրդներին ապահովում է խաղաղություն, աշխատանք, ազատություն, հավասարություն, եղբայրություն ու երջանկություն։*

**Կ. ԲԵԼՅԱԵՎ**



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի և տեղական սովետների ընտրությունները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայկական Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկայի Կոնստիտուցիա (Հիմնական օրենք):

Շ. Առուշանյան—Ընտրությունները անցկացնենք սոցիալիստական դեմոկրատիայի ծավալման նշանաբանով, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունվարի 31-ի համարում։*

Հայկական ՍՍՌ պետական իշխանության բարձրագույն օրգանները, *Հայպետհրատ, 1959։*

Հայկական ՍՍՌ պետական իշխանության տեղական օրգանները, *Հայպետհրատ, 1960։*

Սովետների ընտրությունները *«Ս. Հ.»-ի 1963 թվականի հունվարի 20-ի առաջնորդողը։*

## 2. Սովետական ընտրական սիստեմը ամենադեմոկրատականն է աշխարհում

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական սոցիալիստական դեմոկրատիայի մասին, *Հայպետհրատ, 1959։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Կոմունիստների և անկուսակցականների անխախտ բլոկի հզոր ուժերը. *ճառ Մոսկվա քաղաքի Կալինինյան ընտրական օկրուգի ընտրողների ժողովում, տպագրված «Ս. Հ.»-ի 1962 թվականի մարտի 17-ի համարում։*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ—Ճառ Երևանի Լենինյան ընտրական օկրուգի ընտրողների ժողովում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1962 թվականի մարտի 15-ի համարում։*

Ա. ԽՍԱՅԱՆ—Սովետական դեմոկրատիայի ամրապնդումն ու զարգացումը, *Հայպետհրատ, 1959։*

## 3. Բուրժուական իշխանությունը մոնոպոլիստներին հնազանդ գործիք է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Սովետական սոցիալիստական դեմոկրատիայի մասին. *Հայպետհրատ, 1959։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Ելույթ ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիայի նախագծի մշակման մասին ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն Սովետի առաջին սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1962 թվականի ապրիլի 26-ի համարում։*

ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիայի նախագծի մասին ՍՍՌՄ Գերագույն Սովետի որոշումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1962 թվականի ապրիլի 26-ի համարում։*



## 4. Բոլոր ուժերը յոթնամյակի հինգերորդ տարվա պլանների կատարման և գերակատարման պայքարին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1962 թվականի պլանի կատարման արդյունքների մասին, ՍՍՌՄ Մինիստրների Սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունվարի 27-ի համարում։*

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1962 թվականի պետական պլանի կատարման արդյունքների մասին, Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունը. *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունվարի 30-ի համարում։*

Հիանալի նախաձեռնություն. *«Ս. Հ.»-ի 1963 թվականի հունվարի 29-ի առաջնորդողը։*

## 5. Յուրաքանչյուրը՝ հասարակությանը, հասարակությունը յուրաքանչյուրին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Պարտիայի կազմակերպչական աշխատանքը և կադրերի դաստիարակությունը։ Հասարակական գործունեությանը լայն մասսաների ակտիվ մասնակցությունը նոր հաջողությունների բանալին է, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, էջ 157—170, Հայպետհրատ, 1961։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի Ծրագիրը։

### 6. Լրիվ կարողությամբ օգտագործենք գյուղատնտեսական տեխնիկան, գերազանց կատարենք գարնանացանը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Ամրապնդել և բազմապատկել գյուղատնտեսության զարգացման հաջողությունները։ Ավելի լրիվ բավարարել բնակչության պահանջմունքները գյուղատնտեսական մթերքների ասպարեզում, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961։*

Համաժողովրդական մրցություն ծավալենք 1963 թվականին հացահատիկի և անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու համար, Կրասնոդարի երկրամասի Ուստ-Լաբինսկի արտադրական վարչության կոլտնտեսականների, սովխոզների բանվորների և գյուղատնտեսության մասնագետների նամակը երկրի գյուղատնտեսության բոլոր աշխատողներին. *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունվարի 31-ի համարում։*

### 7. Կանանց միջազգային օրը՝ Մարտի 8-ը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Կանանց բանվորական խնդիրների մասին Սովետական ռեսպուբլիկայում, *ճառ արտասանած 1919 թվականի սեպտեմբերի 23-ին Մոսկվայի բանվորուհիների համաքաղաքային անպարտիական 4-րդ*






*կոնֆերենցիայում, Երկեր, հատոր 30, էջ 29—38, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Սովետական իշխանությունը և կնոջ դրությունը, *Երկեր, հատոր 30, էջ 131—135, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Կին-բանվորուհիներին. *Երկեր, հատոր 30, էջ 472—473, Հայպետհրատ, 1951։*

### 8. 1963 թվականը դարձնենք գյուղատնտեսական մթերքների առատության տարի

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեում. որոշում *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունվարի 31-ի համարում։*

Համաժողովրդական մրցություն ծավալենք 1963 թվականին հացահատիկի և անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու համար, նամակ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունվարի 31-ի համարում։*

Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմում, որոշում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի փետրվարի 3-ի համարում։*

Մարտունու կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության գյուղատնտեսության առաջավորների դիմումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի փետրվարի 3-ի համարում։*

---

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Отдел идеологической работы бюро ЦК КП Армении по руководству промышленностью и строительством

Отдел идеологической работы бюро ЦК КП Армении по руководству сельскохозяйственного производства

# АГИТАТОРИ БЛОКНОТ

## № 4

1963

ՎՖ 05209 Պատվեր 155 Տիրաժ 8303

---

Հանձնված է արտադրության 13/II 1963 թ.
Ստորագրված է տպագրության 20/II 1963 թ.

---

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 8 կոպ.։